Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 11 1949

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— *Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 3—52—78։*

---

# ԲԱՐՁՐ ԲԵՐՔԻ ՆԱԽԱԴՐՅԱԼՆԵՐԸ

*Վերջերս ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահությունը կառավարական բարձր պարգևների արժանացրեց մեր ռեսպուբլիկայի կոլխոզային գյուղատնտեսության մի մեծ խումբ առաջավորների, որոնք անցյալ տարի հացահատիկի, բամբակի և ծխախոտի բարձր բերք էին աճեցրել։ Նրանցից 17 մարդ, որոնք առավել բարձր բերք էին աճեցրել, արժանացան Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչման։*

*Անշուշտ, մեր կոլխոզնիկներին և կոլխոզնիկուհիներին մեծապես հետաքրքրում է այն հարցը, թե կառավարական բարձր պարգևների արժանացած այդ մարդիկ ինչպե՞ս, ի՞նչ ձևով մշակեցին հողը, որ կարողացան եռապատիկ ու քառապատիկ չափով ավելի բարձր բերք ստանալ։ Եվ ահա հենց այստեղ էլ հանդես պիտի գա ագիտատորը և իր համոզիչ ու ճշմարտացի խոսքն ասի կոլխոզ-*

նիկներին, պարգևաբանի առաջավորների փորձը։

Խոսենք գյուղատնտեսության առաջավորներից մի քանիսի փորձի մասին։

Հոկտեմբերյանի շրջանի Փոքր Շահրիար գյուղի կոլխոզի օղակավարուհի Հոկտեմբերիկ Քոլոզյանն անցյալ տարի երեք ու կես հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից ստացավ 88,8 ցենտներ բամբակ։ Այդպիսի աչքի ընկնող հաջողության հասնելու համար անվանի բամբակագործուհին սովետական կառավարության կողմից արժանացավ բարձրագույն պարգևի՝ Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչման։

Իր փորձի մասին Հոկտեմբերիկ Քոլոզյանը պատմում է.

— Բամբակենու առաջին երկու տերևները երևալուն պես սկսում ենք փխրեցումը։ Հենց այդ փխրեցման ժամանակ էլ մի կողմից մենք ոչնչացնում ենք նոր ծլած, կամ ծիլը դեռևս դուրս չեկած մոլախոտը, և մյուս կողմից պայմաններ ստեղծում բամբակենու աճման համար։ Փխրեցման շնորհիվ բամբակի ծիլերն արագ կերպով աճում են։ Երկու-երեք օրից հետո սկսում ենք կուլտիվացիան։ Դրան հաջորդում է քաղհանը և ոռոգումը։

Պլանտացիաների հետագա մշակությունը



մենք շարունակում ենք թեկուզ մոլախոտեր չլինեն։ Շատ տեղերում քաղհանը կամ փխրեցումը ուշացնում են, պատճառաբանելով, թե մոլախոտեր չկան։ Բայց փխրեցումը և քաղհանը մոլախոտերը ոչնչացնելու նպատակով չեն միայն։ Երբ հողը փխրեցնում ենք, նա դառնում է ջրաթափանցիկ, խոնավությունը երկար ժամանակ պահում է իր մեջ, արևի ջերմությունը թափանցում է հողի մեջ և վերջապես դրանով կանխում ենք մոլախոտերի առաջացումը։ Այս բոլորի շնորհիվ էլ բամբակենու համար ստեղծվում են սնվելու և արագորեն աճելու լավագույն պայմաններ։

Մշակության կարևոր պրոցեսներից մեկը դա պլանտացիաների օժանդակ սնուցումն է։ Երկրորդ ոռոգումից առաջ մեր օղակը օժանդակ սնուցում է տալիս պլանտացիաներին սիլիտրա և սուպերֆոսֆատ հանքային պարարտանյութերով՝ լավ մանրացրած վիճակում։ Այդ պարարտանյութերը մենք շաղ ենք տալիս միջշարքային տարածության վրա, ապա կատարում ենք կուլտիվացիա, որից հետո ոռոգում, որպեսզի պարարտանյութը լավ խառնվի հողին, լուծվի և չգոլորշիանա։ Երկրորդ սնուցումը մենք տալիս ենք բամբակենու մասսայական ծաղկման շրջանում։

Այդ միջոցով մենք կանխում ենք ծաղկավիժումը և դրա հետ միասին սնունդ տալով բույսին նպաստում ենք նրա կնգուղակալման հաջող ընթացքին։ Օժանդակ սնուցման համար մենք գործադրում ենք նաև մոխիրը։ Այսպիսով, մենք պլանտացիաները օժանդակ կարգով սնուցում ենք երեք անգամ։

Ինչպես տեսնում ենք, մենք սիստեմատիկ կերպով բարձրացնում ենք հողի բերրիությունը, պարարտացման և օժանդակ սնուցման միջոցով հողը հարստացնում ենք այնպիսի նյութերով, որոնք անհրաժեշտ են բամբակենուն։ Հենց այդ է բարձր բերք ստանալու հիմնական պայմաններից մեկը։

Մշակության ամբողջ սեզոնում մենք անցկացնում ենք 8—9 անգամ քաղհան ու փխրեցում և առնվազն 6 անգամ կուլտիվացիա։ Այդ ժամանակամիջոցում երեք անգամ բուկլից ենք կատարում, մի բան, որ շատ տեղերում գոյություն չունի։ Մի քանի խոսք նոսրացման մասին։ Նոսրացման ժամանակ բամբակենու բունը բնից թողնում ենք 20—25 սանտիմետր հեռավորության վրա, նկատի ունենալով, որ յուրաքանչյուր բնում աճեցնում ենք երկու բույս։

Նոսրացումը կատարում ենք մեկ անգամ և այն ժամանակ, երբ երևում են առաջին եր-



կու տերևները։ Երկրորդ անգամ մենք կատարում ենք ստուգում և եթե ավելորդ բույսեր են մնացել, այդպիսիք հեռացնում ենք։ Յուրաքանչյուր հեկտարի վրա մենք աճեցնում ենք 110 հազար բույս։

Բամբակի ծերատումը մեծ նշանակություն ունի։ Հարկավոր է միայն ճիշտ որոշել դրա ժամկետը, հակառակ դեպքում լավ արդյունք չի ստացվի։ Ծերատումը մենք կատարում ենք այն ժամանակ, երբ բույսերն ունենում են 11—12 բերքատու ճյուղ։ Մենք լրիվ կիրառում ենք նաև այդ միջոցառումը և դրանով իսկ բույսին հնարավորություն տալիս իր բերքատու ճյուղերին ավելի շատ սնունդ տալու։ Անցյալ տարի մեկ հեկտարի վրա, որպես փորձ ես կատարեցի նաև խոր ծերատում, որի մասին կարդացի ակադեմիկ ընկ. Գուլքանյանի հոդվածը «Սովետական Հայաստան» թերթում։ Ինչպես լավ արդյունք ստացվեց։ Այդ հեկտարից չորս ցենտներով ավելի բերք հավաքեցինք՝ մյուս հեկտարների համեմատությամբ։ Այս տարի ես իմ օղակի բոլոր պլանտացիաների վրա կիրառելու եմ խոր ծերատման մեթոդը։

***

Բարձր բերք աճեցնելու գործում շատ հարուստ փորձ են կուտակել մեր ճակնդեղա-

գործները։ Առանձնապես ուշագրավ է Ախուրյանի՝ ռեսպուբլիկայի ամենախոշոր ճակնդեղագործական շրջանի առաջավորների փորձը։ Այդպիսի առաջավոր ճակնդեղագործներից մեկն է այդ շրջանի Առափի գյուղի կոլխոզի օղակավարուհի Դուխիկ Խաչատրյանը։ Նրա օղակը ամեն տարի բարձր բերք ստանում։ Անցյալ տարի այդ օղակը հեկտարից հավաքեց մոտ 400 ցենտներ շաքարի ճակնդեղ։

Ցանքի մշակության մասին օղակավարուհի Դուխիկ Խաչատրյանը պատմում է.

— Նախ, ես ուզում եմ ասել, որ ճակնդեղի արմատների մեծությունը, հետևապես նրանց քաշը կախված է հենց ցանքի մշակությունից։ Եթե հողում ճակնդեղի արմատի աճման համար ստեղծենք նպաստավոր պայմաններ, առաջին հերթին սնունդ և խոնավություն, ապա նա ավելի լավ կաճի ու կմեծանա։ Հենց այդ է մեզ սովորեցնում գիտությունը։

Մշակությունը մենք սկսում ենք այն ժամանակ, երբ ճակնդեղի ծիլը արդեն երկու փոքրիկ տերև է տալիս։ Այդ ժամանակ սկըսում ենք առաջին փխրեցումը. հողը փափկանում է, ճակնդեղը սկսում է աճել։ Անցնում է երեքից չորս օր. սկսում ենք մշակու-



թյան մյուս պրոցեսը, քաղհանը և նոսրացումը՝ միասին։ Հեռացնելով մոլախոտը պլանտացիաներից, մենք նոսրացնում ենք նաև ճակնդեղի բույսերը, թողնելով մեկը մյուսից 16—18 սանտիմետր հեռավորության վրա։ Մի քանի օր հետո ստուգում ենք, թե նոսրացումը որքա՞ն ճիշտ է կատարվել. եթե նկատում ենք ավելորդ մնացած բույս՝ դուրս ենք քաշում։ Այսպիսով, նոսրացումից հետո յուրաքանչյուր հեկտարի վրա աճեցնում ենք 120 հազար բույս, կամ ինչպես ընդունված է ասել՝ ստեղծում ենք ցանքի լիարժեք հեկտարներ։

Դրանից հետո սկսվում է պլանտացիաների մշակության իսկական շրջանը։ Որպեսզի ճակընդեղն ավելի լավ աճի, հարկավոր է լրացուցիչ սնունդ տալ։ Տալիս ենք օժանդակ սնուցում՝ հանքային պարարտանյութերով։ Այդ գործը պահանջում է հմտություն. չի կարելի պարարտանյութը շաղ տալ ամեն կողմ և ինչպես պատահի։ Այդ ձևով շատ արդյունք չի ստացվի։ Մեր օղակը օժանդակ սնուցման համար պարարտանյութը խիստ մանրացնում է, մաղում և փոշին խնամքով շաղ է տալիս միջշարքային տարածությունների մեջ։ Դրանից անմիջապես հետո պլանտացիան փխրեցնում ենք և այդ միջոցով

պարարտանյութը խառնում հողին։ Այնուհետև ջրում ենք ցանքը, որպեսզի պարարտանյութը ամբողջությամբ ներծծվի հողի մեջ և մարսելի դառնա ճակնդեղի բույսի համար։

Ճակնդեղը սկսում է ավելի արագ աճել։ Պատրաստվում ենք բույսին նորից լրացուցիչ սնուցում տալու։ Մինչ այդ թռչնաբուծական ֆերմայից և կոլխոզնիկների բակերից հավաքում ենք մեծ քանակությամբ թռչնաղբ, որը շատ բարձրորակ պարարտանյութ է։ Պլանտացիաները հարստացնում ենք սննդանյութերով, տալով երկրորդ օժանդակ սնուցումը։ Օժանդակ սնուցումից անմիջապես հետո հողը փխրեցնում ենք նորից և դարձյալ ոռոգում։ Եվ այսպես շարունակում ենք պլանտացիաների հետագա մշակությունը։ Մշակության ընթացքում հաճախ ստուգում ենք, թե ճակնդեղի բույսերը ինչպե՞ս են աճում, և եթե նկատում ենք, թե այս կամ այն բույսը «խեղճ է մնացել»՝ անմիջապես նրան օգնության ենք հասնում, տալիս ենք օժանդակ սնուցում կամ խոնավություն։



ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության կողմից Սոցիալիստական Աշխատանքի



Հերոսի կոչման արժանացած 17 առավել առաջավոր կոլխոզնիկների մեծ մասը (10 մարդ) ծխախոտագործներ են։ Նրանցից մեկն է Նոր Բայազետի շրջանային կենտրոնի Բասիկի անվան կոլխոզի օղակավար Հրաչիկ Զաքոյանը, որի օղակը հեկտարից ստացել է 25,1 ցենտներ ծխախոտ։ Այսպիսով, Հրաչիկ Զաքոյանը, ինչպես նաև Սոցիալիստական Աշխատանքի մյուս Հերոսները ապացուցեցին, որ մեզ մոտ կարելի է ծխախոտի բերքատվությունը եռապատկել, եթե արմատապես բարելավենք նրա մշակության ագրոտեխնիկան։

Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Զաքոյանը հետևյալն է պատմում պլանտացիաների մշակության ասպարեզում իր ունեցած փորձի մասին.

— Սածիլը տնկելուց հետո ամենից առաջ պետք է հոգ տանել, որ նա աճի և չչորանա։ Դրա համար շատ մեծ նշանակություն ունի պլանտացիաների երկրորդ ոռոգումը։ Սածիլը տնկելուց հետո նրա արմատները երկուսից երեք օր մնում են մի տեսակ թմրած,

կամ ավելի ճիշտ կլինեի ասել՝ հիվանդ վիճակում և չեն թափանցում հողի մեջ։ Եվ եթե այդ ժամանակ, այսինքն երկուսից երեք օր հետո, երկրորդ անգամ պլանտացիան չջրես, ապա սածիլը կչորանա։ Այսպես ուրեմն՝ երկրորդ ոռոգումից հետո բույսը սկըսում է վերակենդանանալ, աճել ու փարթամանալ։ Անցնում է հինգ օր և մեկ անգամ էլ պլանտացիաները ոռոգում ենք։ Այս անգամ արդեն հայտնի է դառնում, թե որ բույսն է չորացել, անմիջապես նրա տեղը տնկում ենք նոր սածիլ, որպեսզի ոչ մի բաց տարածություն չմնա և հեկտարները լիարժեք լինեն։ Երբ հողը քեշի է գալիս, սկսում ենք առաջին քաղհանն ու փխրեցումը։ Բույսից հեռու ընկած տարածությունը քաղհանում ենք և հետո հատուկ գործիքով փոցխում, այնպես, որ ոչ մի մոլախոտ չի մնում մեր պլանտացիաներում։

Երկրորդ և երրորդ քաղհանի և փխրեցման ժամանակ պլանտացիաները սնուցում ենք թռչնաղբով և գոմաղբով։ Որպեսզի սնուցումը կատարվի համահավասար և ծխախոտի ոչ մի բույս չմնա առանց լրացուցիչ սնուցման, մե՛նք հիշատակված պարարտանյութերը լու-



ծում ենք ջրի մեջ և ապա դանդաղ հոսանքով բաց թողնում պլանտացիաների վրա։ Մշակության այդ նույն պրոցեսները մենք շարունակում ենք մինչև բերքահավաք սկսելը։

Ահա թե ինչպես են կատարում բամբակենու, ճակնդեղի և ծխախոտի պլանտացիաների մշակությունը սոցիալիստական գյուղատնտեսության առաջավորները։

Սոցիալիստական գյուղատնտեսության առաջավորների փորձը տարածելն ամենից առաջ մեր բազմահազար ագիտատորների պարտականությունն է։ Ագիտատորը կոլխոզնիկներին պետք է պատմի ոչ միայն առաջավորների ձեռք բերած նվաճումների մասին, այլև նրանց աշխատանքի փորձի մասին։ Նա պետք է կազմակերպի նաև այդ փորձի կոնկրետ կիրառումը բրիգադայում և օղակում, նա պետք է ձգտի, որ բոլոր կոլխոզնիկներն ու կոլխոզնիկուհիները աշխատեն առաջավորների օրինակով և հավասարվեն նրանց։ Այդպես է աշխատում, օրինակ, Հոկտեմբերյանի շրջանի Բամբակաշատ գյուղի կոլխոզի № 7 բրիգադայի ագիտատոր ընկ. Խ. Ստեփանյանը։ Նա բրիգադայի կոլխոզնիկներին մանրամասնորեն պատմել է ան-

վանի բամբակագործուհի, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Հոկտեմբերիկ Քոլոզյանի փորձի մասին: Այնուհետև կազմակերպել է այդ փորձի կոնկրետ կիրառումը բրիգադայի ներսում: Ագիտատորի այդ աշխատանքը տվել է մեծ արդյունք: Այդ բրիգադան լավագույն ժամկետում ավարտել է բամբակենու առաջին քաղհանը, կուլտիվացիան, նոսրացումը և ձեռնամուխ է եղել երկրորդ մշակության աշխատանքներին:

Այս օրերին, երբ ծավալվում են ցանքի մշակության աշխատանքները, ագիտատորների խնդիրն է՝ առաջավորների փորձը պարզաբանել բոլոր կոլխոզնիկներին, որը խթան կհանդիսանա ցանքի մշակությունը ամենուրեք գերազանց որակով կատարելու համար:

Ա. ՊԵՏՐՈՍՅԱՆ



ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԻՑ

## ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԵՎ ԱՆՁՆԱԿԱՆ ՕՐԻՆԱԿԻ ՈՒԺԸ

Լենինականի Տեքստիլ կոմբինատի ֆաբրիկաներում, կորպուսներում, բրիգադաներում բանվորների մեջ ագիտացիոն-մասսայական աշխատանք են տանում 120 ագիտատորներ, որոնք համախմբված են 10 ագիտկոլեկտիվներում: Ագիտատորներ առաջադրելիս կոմբինատի պարտիական կազմակերպությունը ինկատի է ունենում ոչ միայն նրանց կրթության և քաղաքական պատրաստականության մակարդակը, այլև տվյալ անձնավորության կատարած կոնկրետ աշխատանքն արտադրության մեջ, թե որքանով է նա առաջավոր, ինչպիսի հեղինակություն է վայելում բանվորների մեջ: Ագիտատորներ առաջադրելիս պարտիական կազմակերպությունը, որպես սկզբունք է ընդու-

նում նաև այն հանգամանքը, որ յուրաքանչյուր ագիտատոր իր աշխատանքով անմիջապես կապված լինի տվյալ տեղամասի, բրիգադայի հետ։

Լավ գիտենալով իր տեղամասի արտադրական ամբողջ կյանքը, ինչպես արտադրության մեջ, այնպես և անձնական կյանքում անձամբ ճանաչելով մարդկանց, ագիտատորը կարողանում է ճշտորեն, նպատակասլաց կերպով կազմակերպել իր ագիտացիոն-մասսայական աշխատանքը, օգնել մարդկանց ավելի լավ աշխատելու համար։

Խոսենք օրինակներով։

Գործվածքային ֆաբրիկայի 4-րդ կորպուսում է աշխատում անվանի ստախանովական ենթավարպետ, շքանշանակիր Հարություն Դավթյանը, որը պլանով սահմանված 48 դազգահի փոխարեն սպասարկում է 88 դազգահ և իր արտադրական առաջադրանքները կատարում է 125—135 տոկոսով։ Պարտկազմակերպության կողմից Հ. Դավթյանը ագիտատոր է առաջադրված հենց իր ղեկավարած բրիգադայում։

Ագիտատոր Դավթյանը չի բավարարվում միայն իր զրույցների ժամանակ աշխատան-



քի նոր, առաջավոր մեթոդների մասին խոսելով, նա հենց ինքը կոնկրետ կերպով այդ մեթոդները կիրառում է իր ղեկավարած բրիգադայում։ Այսպես օրինակ, լավ գիտենալով իր մոտ աշխատող ջուլհակներից յուրաքանչյուրի ընդունակություններն ու կարողությունները, Դավթյանը նրանց մեջ կատարել է աշխատանքի ճիշտ բաժանում։ Եթե հենքի թելի կտրման, կամ ջուլհակի սպասարկում պահանջող որևէ այլ պատճառով միաժամանակ կանգնում են մի քանի դազգահ, ապա ըստ Դավթյանի անցկացրած աշխատանքի մեթոդի ջուլհակներն առաջին հերթին աշխատանքի են գցում այն դազգահները, որոնք դրա համար ավելի քիչ ժամանակ են պահանջում և ապա անցնում են մյուս դազգահներին։ Այսպիսով Դավթյանի ղեկավարած կոմպլեկտում սիստեմատիկ կերպով աշխատանքի մեջ է գտնվում դազգահների 95—97 տոկոսը։

Կամ թե վերցնենք արտադրանքի որակի բարձրացման հարցը։ Երբ հայտնի դարձավ լավորակ արտադրանքի բրիգադաներ կազմակերպելու վերաբերյալ Ալեքսանդր Զոտկինի առաջարկությունը, ագիտատոր Դավ-

թյանը ֆաբրիկայում առաջիններից մեկը այդ առաջարկությունը մասսայականացրեց իր բրիգադայում, այն կապելով իրենց ունեցած հնարավորությունների հետ։ Լսելով իրենց ագիտատորի և բրիգադիրի համոզիչ պարզաբանումները, բրիգադայի աշխատողները միահամուռ կերպով որոշեցին արձագանքել Զուտկինի առաջարկությանը և ամբողջ բրիգադայով տալ միայն լավորակ արտադրանք։

Բրիգադայի որոշումը կենսագործելու համար Դավթյանը իր հերթափոխ ենթավարպետների հետ միասին մեկ անգամ ևս ամենամանրազնին ստուգման ենթարկեցին բրիգադայի բոլոր դազգահները, վերացրին նկատված թերությունները։ Նրանք սահմանեցին այնպիսի կարգ, ըստ որի հերթափոխությունները դազգահներն իրար են հանձնում միանգամայն կարգին վիճակում, առանց որևէ խափանման, սկսեցին ամենայն խստապահանջությամբ ստուգել մանարան ֆաբրիկայից ստացվող ինչպես հենքի, այնպես և միջնաթելի որակը։

Իր զրույցների ժամանակ ագիտատոր



Դավթյանը նշում էր լավորակ արտադրանք տվող ջուլհակների լավագույն աշխատանքը, մատնացույց անում բարձրորակ արտադրանք տվողներին, նշելով թե ինչու է ցածրորակ արտադրանք ստացվում, օգնում վերացնելու եղած թերությունները։

Եվ ահա այսպիսի ամենօրյա համառ աշխատանքի շնորհիվ Հ. Դավթյանի ղեկավարած բրիգադան փայլուն հաջողություններ ձեռք բերեց. սկսած փետրվար ամսից բրիգադան տալիս է միայն առաջին տեսակի արտադրանք։

Կոմբինատի լավագույն ագիտատորներից է նաև գործվածքային գործարանի 4-րդ կորպուսի պետ Արամայիս Կարանյանը։ Պարտկազմակերպության հանձնարարությամբ նա ագիտացիոն-մասսայական աշխատանք է տանում հենց իր ղեկավարած ցեխում։ Նրա կազմակերպած զրույցները անցնում են հետաքրքիր, աշխույժ ու բովանդակալից, որովհետև ինչ հարցի մասին էլ որ խոսելիս լինի նա, այն կապում է կոմբինատի, իրենց գործարանի ու ցեխի առօրյա խնդիրների հետ։ Ահա այդ զրույցներից

մեկը, որը Կարանյանն անցկացրեց հումքը խնայողաբար ծախսելու մասին:

Հումքը խնայողաբար ծախսելու վերաբերյալ Կուպավինայի Նուրբ մահուդի ֆաբրիկայի անվանի ստախանովականներ Մարիա Ռոժնևայի և Լիդիա Կոնոնենկոյի արած հայրենասիրական առաջարկության մասին խոսելուց հետո ագիտատոր Ա. Կարանյանն ասաց.

— Մեր ֆաբրիկայում և հենց մեր ցեխում նույնպես հումքի մեծ կորուստներ են տեղի ունենում: Այսպես, օրինակ՝ միայն ապրիլ ամսին մեր ցեխն ունեցավ 6.000 կիլոգրամ թելի՝ հումքի կորուստ: Եթե այդ քանակությամբ թելն օգտագործվեր, ապա մենք երկրին լրացուցիչ կերպով կտայինք 40 հազար մետր գործվածք: Բայց չէ՞ որ այդ կորուստները տվել ենք մենք, մեր լավ աշխատանքի դեպքում այդ տեղի չէր ունենա: Որպես ապացույց կարող է ծառայել ենթավարպետ Հարություն Դավթյանի ղեկավարած բրիգադան, որն աշխատում է նույն պայմաններում, ինչպես և ցեխի մյուս բրիգադաները, բայց նրա մոտ հումքի կորուստն աննշան է:

Ապա Ա. Կարանյանը մանրամասը նշում



է հումքի կորուստ ունենալու պատճառները, մատնացույց անում այն մարդկանց, որոնց վատ աշխատանքի հետևանքով տեղի են ունենում կորուստները: Իր ազդեցիկ, համոզիչ խոսքի, իր լավագույն կազմակերպչական աշխատանքի շնորհիվ Ա. Կարանյանը ենթավարպետների հետ միասին, պայքար կազմակերպեց հումքը խնայողաբար օգտագործելու և այդ պայքարի արդյունքներն ըզգացվեցին հենց անցյալ՝ մայիս ամսին: Մայիս ամսվա ընթացքում Կարանյանի ղեկավարած ցեխը իսպառ վերացրեց հումքի կորուստը, տնտեսեց 3.800 կիլոգրամ թել և երկրին պլանից դուրս տվեց 25 հազար մետր գործվածք:

Գ. ՍԱՀԱԿՅԱՆ

Լենինականի Տեքստիլ կոմբինատի պարտկոմի քարտուղար:



## ԶԳՈՆՈՒԹՅՈՒՆԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅՐԵՆԱՍԵՐՆԵՐԻ ՊԱՐՏՔՆ Է

*Սովետական ժողովուրդը, որը դաստիարակվում և ղեկավարվում է Լենին-Ստալինի պարտիայի կողմից, իր հիանալի հատկությունների՝ հայրենասիրության, արիության, անձնվիրության, հերոսության ու վճռականության շնորհիվ պատմական հաղթանակներ է ձեռք բերել ինչպես խաղաղ շինարարության ճակատներում, այնպես էլ քաղաքացիական պատերազմի տարիներին, Հիտլերի «գովաբանված» ֆաշիստական բանակի դեմ մղվող պատերազմում։*

*Այս հատկությունները հանդիսանում են յուրաքանչյուր սովետական հայրենասերի անբաժանելի սեփականությունը և հատկանշական գծերը։ Ռևոլյուցիոն զգոնություն, մեծագույն զգուշություն թշնամու ամեն տեսակի ինտրիգների նկատմամբ, անձնուրաց նվիրվածություն իր հայրենիքին, բոլշևիկյան պարտիային և նրա առաջնորդ ընկեր Ստալինին — ահա կոմունիստական հասա-*



*րակարգ կառուցող սովետական մարդկանց հիմնական հատկությունները։*

*Մեր պարտիայի պատմությունը լի է բոլշևիկների ընդհատակյա կյանքից վերցրած ցայտուն օրինակներով, բոլշևիկներ, որոնք երբեք պարտիական գաղտնիքը չեն մատնել թշնամուն, չեն տապալել կոնսպերատիվ տեխնիկան։ Դրա վառ օրինակն է հանդիսանում ընկեր Ստալինի ղեկավարությամբ Հավլաբարի անլեգալ տպարանի աշխատանքի կազմակերպումը։*

*Գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ սովետական ժողովրդի մղած մեծ պատերազմը մի լուրջ քննություն հանդիսացավ սովետական պետության նյութական և հոգևոր բոլոր ուժերի համար, դրա հետ միասին, նա կրկին հաստատեց սովետական մարդկանց անխոնջ զգոնությունը և առավելագույն զգաստությունը։*

*Սովետական հայրենասիրության հզոր ուժն է որոշում մեր բանվորների, կոլխոզնիկների, գիտության ու տեխնիկայի, կուլտուրայի և արվեստի գործիչների մտքերն ու աշխատանքը, արարքներն ու վարքագծերը։ Ժողովուրդը ուժ և աշխատանք չի խնայում Սովետական Միությունն է՛լ ավելի հզոր*

դարձնելու, նրա հաղթական առաջընթացն է՛լ ավելի արագացնելու համար։

Ոչ մի րոպե չի կարելի մոռանալ, որ մեր առաջխաղացումը տեղի է ունենում, ինչպես անցյալում, այնպես էլ այժմ, կապիտալիստական աշխարհի ուժերի դեմ մղվող վճռական պայքարի պայմաններում։

Անհրաժեշտ է միշտ հիշել, որ կապիտալիստական շրջապատումը շարունակում է գոյություն ունենալ և կատաղի պայքար մղել Սովետական Միության դեմ։

Ընկեր Ստալինը բազմաթիվ անգամ հիշեցրել է, որ ծավալելով խաղաղ սոցիալիստական շինարարություն, մենք ոչ մի րոպե չպետք է մոռանանք միջազգային ռեակցիայի դավերի մասին, ռեակցիա, որը նոր պատերազմի պլաններ է մշակում։ Անհրաժեշտ է հիշել մեծ Լենինի ցուցումներն այն մասին, որ անցնելով խաղաղ աշխատանքի միշտ պետք է լինել զգոն, աչքի լույսի պես պաշտպանել մեր երկրի զինված ուժերն ու պաշտպանունակությունը։

Այժմ, ինչպես երբեք, մեզ անհրաժեշտ է բոլշևիկյան զգոն աչք, սուր հոտառություն, որպեսզի կարողանանք ժամանակին, առաջին հայացքից միշտ նկատել, ամենափոք-



րիկ նշաններից անգամ հայտաբերել թշնամու կեղտոտ, ստոր, կոնտրռևոլյուցիոն էությունը։

Մեզանից յուրաքանչյուրը պետք է վերհիշի Սովետական Միությունում անգլիական դեսպանության զինվորական կցորդ ոմն Խիլտոնի հետ տեղի ունեցած «արկածը», որն արտաքուստ զուրկ չէ կոմիզմից, բայց ըստ էության խորապես ուսանելի է։ Ոչ պակաս, քան գեներալի աստիճան ունեցող վերոհիշյալ պարոնը մի անգամ, 1947 թվականի հոկտեմբերին, մի տարօրինակ բան կատարեց՝ իր փայլուն մունդիրը փոխարինեց պատառոտված կիսամուշտակով և ճմլված գդակով։ Այդ ձևով պարոն Խիլտոնը զբոսանքի դուրս եկավ դեպի Մոսկվայի պաշտպանական գործարաններից մեկի շրջապարիսպը։ Բայց որքան էլ խորամանկորեն էր քողարկված գեներալը, գործարանի շրջապատի երկարությամբ նրա քայլերը կասկած առաջացրեց գործարանի երեք աշխատողների՝ սովետական հասարակ մարդկանց մեջ, որոնք նրան համառ կերպով հրավիրեցին պարետանոց։ Այնտեղ պարզվեց գեներալի անձնավորությունը և Խիլտոնի մոտ հայտնաբերվեց լուսանկարչական մի փոքրիկ ապարատ,

որով նա լուսանկարում էր գործարանի կորպուսները։

Պարոն Խիլտոնի «դիմակահանդեսը» մերկացվեց սովետական հայրենասերների զգոնության շնորհիվ։

Սովետական մարդկանց զգոնությունը ավելի ուժեղ հանդիսացավ, քան այն ամեն տեսակի «գերարտոնությունները», որով օգտվում են օտարերկրյա դիվանագետները, որոնք դիվանագիտական թղթակցությունների անվան տակ ուղարկում են ոչ միայն այնպիսի փաստաթղթեր ու լուսանկարներ, ինչպիսին որսում էր պարոն Խիլտոնը, ոչ միայն գրոշներով գնվող գունավոր հանքաքարեր և թանկարժեք իրեր, որոնք նրանք սպեկուլյացիայի են ենթարկում, այլ և... կենդանի մարդիկ։

Ահա, օրինակ, ինչպիսի գործերով են զբաղվում արգենտինյան դիվանագետները Սովետական Միությունում։

1948 թվականի հունվարի 2-ին մեր երկրում Արգենտինայի դեսպանության զինվորական կցորդ պարոն Կոնդեն ինքնաթիռով Մոսկվայից թռավ Պրագա, իր հետ ունենալով դիվանագիտական մի ծանրոց, այդ թվում մի մեծ սնդուկ։ Մոսկվա-Կիև ճանապարհին ինքնաթիռի ուղևորների ուշադրու-



թյունը գրավեցին սնդուկից լսվող չխչխկոցներն ու տնքոցները։

Երբ ինքնաթիռը հասավ մոտակա օդանավակայանը, մաքսային իշխանությունների կողմից պարզվեց, որ արգենտինյան դեսպանության կցորդ Կոնդեն փորձել է հատուկ կարգով սարքավորված սնդուկի մեջ անլեգալ ձևով դուրս բերել մի անհայտ մարդու, ընդորում այդ անհայտ մարդու սնդուկի մեջ հայտաբերվեցին մի ատրճանակ իր փամփուշտներով և երկու սովետական ու չեխոսլովակյան կեղծ անձնագրեր։ Հետագայում հաստատվեց, որ Արգենտինայի դեսպանության երկրորդ քարտուղար Բասանը նույնպես հունվարի 2-ին փորձել է օգտվել նույն ինքնաթիռով՝ սնդուկի մեջ գաղտնաբար դուրս բերել մի ուրիշ մարդու։ Սակայն այս փորձը ևս ձախողվել է։

Կոնդեն և Բասանը, Սովետական Միության Արտաքին գործերի մինիստրության առաջարկով, թողեցին Սովետական Միության սահմանները։

Այս ամենը ցույց է տալիս, որ կապիտալիստական երկրների կառավարող շրջանները ոչ մի բանի առաջ կանգ չեն առնում իրենց սուր նպատակներին հասնելու համար։ Լինում են դեպքեր, երբ օտարերկրյա, առա-

վելսպես անգլո-ամերիկյան ժուռնալիստները, մեր երկիրը գալով, իրենց պրոֆեսիան շփոթում են մոլի լրտեսների պրոֆեսիայի հետ. այդպիսի «ինֆորմատորների» նկատմամբ պետք է ականջներս սուր պահենք:

Ներկայումս Սովետական Միությունը հզոր և անսասան է, ինչպես երբեք: Հենց այդ պատճառով է, որ կապիտալիստական երկրների հետախույզները ակտիվացնում են իրենց հակասովետական քայքայիչ գործունեությունը: Դրա համար նրանք ձգտում են օգտագործել իրենց բոլոր ստոր միջոցները՝ պրովոկացիայի, շպիոնաժի իրենց կուտակած ամբողջ փորձը: Նրանք փորձում են մեր երկիրն ուղարկել իրենց գործակալներին՝ գիտական, արդյունաբերական, առևտրական, դիվանագիտական և այլ գործիչների անվան տակ: Օտարերկրյա հետախույզները ոչ մի միջոցից չեն խորշում Սովետական Միությունում իրենց համար ազդեցության օջախներ գտնելու համար: Դա պարտավորեցնում է սովետական ու պարտիական աշխատողներին, սովետական բոլոր մարդկանց ուժեղացնել իրենց զգոնությունը, միշտ լինել զգաստ: Չի կարելի մոռանալ, որ ինքնահանգստացումն ու բարեհոգությունը կարող են ծանր հետևանքներ ունենալ մեր



հայրենիքի, մեր ամբողջ ժողովրդի շահերի համար:

Երբ խոսքը վերաբերվում է զգոնության, անհրաժեշտ է հիշել, որ մեր դեմ մղվող գաղտնի պատերազմի մեթոդներն ու պրիոմները չափազանց նրբացված են ու բազմազան և որ նրանց դեմ պետք է պայքարել այն բոլոր տեղամասերում, որտեղ հայտաբերվում է թշնամու շահագրգռվածությունը, թշնամու ազդեցությունը:

Թշնամու գործակալությունը ամեն կերպ արատավորում է մեր երկիրը, զրպարտում է սովետական մարդկանց, նվազեցնում է նրանց նվաճումները և դրա հետ միասին ջանում է ամեն կերպ պահպանել և աշխուժացնել մեր մարդկանց գիտակցության մեջ կապիտալիզմի մնացուկները:

Առանց քաղաքական և կուլտուրական լայն շրջահայեցողության, առանց հաստատամտորեն և համառ կերպով բոլշևիզմին տիրապետելու, չի կարող լինել ռևոլյուցիոն զգոնություն, բոլշևիկյան աչալրջություն, թշնամուն ճանաչելու և վնասազերծ դարձնելու ունակություն:

1947 թվականի հունիսի 9-ին Սովետական Միության Գերագույն Սովետի Նախագահությունը Հրամանագիր հրապարակեց պետա-

կան գաղտնիքը հրապարակելու համար քրե-
ական պատասխանատվության ենթարկելու
մասին։ Մեր երկրի յուրաքանչյուր քաղաքա-
ցի պարտավոր է յուրացնել նրա բովանդա-
կությունը, սրբությամբ կատարել այն ոչ թե
խոսքով, այլ գործով։

Կան որոշ ընկերներ, որոնք դեմ չեն ցու-
ցամոլություն անելու իրենց լայն էրուդիցիա-
թյամբ։ Այդպիսի «զրուցասերները» հաճախ
բերաններից դուրս են թռցնում տեղեկու-
թյուններ, որոնք վստահված են նրանց՝ ի-
րենց պաշտոնական աշխատանքի հետ կապ-
ված։

Յուրաքանչյուր սովետական քաղաքացու
պարտականությունն է՝ սրբությամբ պահ-
պանել պետական գաղտնիքը, յուրաքանչյուր
սովետական աշխատող պետք է հիշի, որ ե-
թե պետությունը, կամ իր պետք նրան վըս-
տահել են գաղտնի տեղեկություններ, այդ
թվում և թանկվոր, եթե նրան պաշտոնա-
կան օգտագործման համար տրվել են փաս-
տաթղթեր, սա հավասարապես վերաբերում
է նաև ժողովրդական տնտեսության բոլոր
բնագավառներում կատարված այն հայտնա-
գործություններին, գյուտերին, հետազոտա-
կան և փորձնական աշխատանքներին, որոնք
մինչև դրանց հրապարակումը մամուլում



հանդիսանում են պետական գաղտնիք՝ այդ
ամենը ոչ մի ձևով հրապարակման ենթակա
չեն։

Զգոնությունը չի գալիս ինքնահոսով,
այն պետք է կազմակերպել, դաստիարակել
մարդկանց մեջ։ Այդ նշանակում է պրակտիկ
աշխատանքում ամեն օր կիրառել մեր պար-
տիայի փորձված զենքը՝ բոլշևիկյան համար-
ձակ քննադատությունը և ինքնաքննադա-
տությունը, որը մերկացնում է այն ամենը,
ինչ անպետք է, խորթ և նեխված։

Մեր հայրենիքի շահերը պահանջում են,
որ օտարերկրյա ռեակցիայի դավերին, կա-
պիտալիստական հետախուզությունների ճը-
կամ հնարամտություններին սովետական
հայրենասերները պատասխանեն կրկնապա-
տիկ զգոնությամբ,— սա այն փորձված ու-
ղին է, որը միշտ ապահովել է մեր հաջողու-
թյունները։

Զգոնությունը պետք է լինի սովետական
մարդկանց երկաթե օրենքը։

Գ. ԲԺԻԿՅԱՆ

# ԻՆՉՊԵՍ Է ԱՊՐՈՒՄ ԱՆԳԼԻԱՅԻ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ

1950 թվականի ամառը Անգլիայում տեղի են ունենալու պառլամենտի ընտրությունները։ Եվ որքան քիչ ժամանակ է մնում մինչև ընտրությունները, լեյբորիստական լիդերներն այնքան ավելի շատ են խոսում այն մասին, որ նրանց քաղաքականությունն իբր թե «արտահայտում է ժողովրդի շահերը»։ Իսկ ինչպե՞ս է բանն իրականում։ Ինչպե՞ս է ապրում և ի՞նչ է մտածում անգլիական ժողովուրդը։

Վերջերս ինձ բախտ վիճակվեց մոտ երեք շաբաթ մնալ Անգլիայում, որպես սովետական կանանց դելեգացիայի անդամ։ Մենք եղանք Անգլիայի և Շոտլանդիայի մի քանի քաղաքներում, այցելեցինք մի քանի գործարաններ, զրուցեցինք զանազան պրոֆեսիաների տեր անգլիացիների հետ։ Անգլիայի աշխատավոր ժողովուրդը ոչ միայն պատերազմ չի ցանկանում, այլև դեմ է ռեակցիոն ղեկա-



վարների կողմից Սովետական Միության դեմ կիրառվող թշնամական քաղաքականությանը։ Նա կողմնակից է Սովետական Միության հետ իսկական և ամուր բարեկամության։

Մենք եկանք Անգլիայի մայրաքաղաքը՝ Լոնդոն։ Այստեղ, քաղաքի կենտրոնում, Սիտիում և նավաշինարանների մոտ, առաջվա նման դեռ մնում են պատերազմի ժամանակ ավերված տների փլատակները, առաջվա նման կենտրոնական փողոցներում կարելի է հանդիպել գործազուրկ նկարիչների, որոնք իրենց նկարները նկարում են ուղակի մայթի վրա, հույս ունենալով մի քանի պեննի վաստակել մի պնակ խաշած բանջարեղենի համար։ Մի քանի փողոցներում, հայտնի չէ թե ինչու, դեռ պահպանվում են ռմբապաստարանները։ Մի խոսքով, արտաքուստ Լոնդոնը նույնն է, ինչ որ չորս տարի առաջ։

Բայց եթե խորը դիտենք այդ խոշոր, բազմամիլիոն քաղաքի կյանքը, կնկատենք, որ Լոնդոնում, ինչպես և ամբողջ երկրում, տեղի են ունեցել նկատելի փոփոխություններ։

Այդ փոփոխություններն այն են, որ Անգլիայի աշխատավորության ավելի և ավելի լայն մասսաներ են սկսում հասկանալ, թե որքան կործանարար է ներկայումս իշխա-

նության գլուխ կանգնած լեյբորիստների հակաժողովրդական քաղաքականությամբ։

Մեզ վիճակվեց այցելել բանվորական մի քանի տներ։ Այն, ինչ մենք տեսանք այնտեղ, լիովին հերքում է լեյբորիստների հավաստիացումները անգլիական ժողովրդի կյանքը «բարելավելու» մասին։

...Դանդին—Շոտլանդիայի հին, փոքրիկ քաղաք է։ Այստեղ բանվորական թաղամասի փողոցներից մեկում ապրում է հանքափորի կին Կատրին Նիկոլսը։

Մեզ ասացին, որ Կատրինը ընդամենը 22 տարեկան է, բայց երբ մենք մտանք նրա սենյակը, տեսանք հոգնած, նիհար դեմքով, շրթունքների անկյուններում խորը կնճիռներով մի կին։ Նա կանգնած էր փայտե մահճակալի մոտ, որի ոչ մի բանով չծածկված ներքնակի վրա քնած էր նրա կրծքի երեխան։ Նիկոլսների սենյակն այնքան փոքր էր, որ այնտեղ հազիվ էին տեղավորվել մահճակալը, սեղանը և երեք աթոռ։ Անկյունում, որն ամբողջովին խոնավացել էր, գտնվում էր ծորակն ու կոնքը. այդտեղ էր և փոքրիկ պլիտան. Կատրին Նիկոլսի սենյակը բացվում էր ուղղակի աստիճանների վրա. չկար ոչ խոհանոց, ոչ զուգարան։

Կատրինի ամուսինը շաբաթական ստա-



նում է հինգ ֆունտ ստերլինգ, իսկ Անգլիայում այդպիսի ընտանիքի նվազագույն ապրուստը պահանջում է շաբաթական ութ ֆունտ ստերլինգ։ Աշխատավարձի առնվազն 25 տոկոսը գնում է բնակարանի, ածխի և լուսավորության վարձը վճարելու համար։

— Ինչո՞ւ երեխան մսուր չեք հանձնում,— հարցրինք Կատրինին։

— Պետք է 15 ամիս սպասել, մինչև որ տեղ բացվի։ Մինչ այդ երեխան կմեծանա... կամ կմեռնի թերասնումից,— պատասխանեց նա դառնությամբ։

Մենք Կատրինին հարցրինք, թե ինչպե՞ս է սնվում նա։

— Դուք ուզում եք իմանալ, թե ի՞նչ եմ ուտում ես, որպեսզի կարողանամ կերակրել երեխայիս, իսկ ի՞նչ կարելի է ուտել, եթե քարտով շաբաթական տալիս են միայն 85 գրամ ճարպ և 200 գրամ միս։ Ասենք, եթե նույնիսկ քարտը վերացնեն, էլի չի օգնի, որտեղի՞ց փող գտնել ապրելու համար։

Նույնպիսի աղքատություն տեսանք մենք Անգլիայի մյուս բանվորական տներում ևս։

Մենք եղանք «Ռոուտան-հաուզ»-ում։ Այսպես է կոչվում Լոնդոնի բանվորական ռայոնում տղամարդկանց հատկացված գիշերելու տունը։ Տեղական լեյբորիստներից մեկը մեզ

հավատացնում էր, որ այնտեղ մարդիկ ապրում են «հաճույքով»:

Իհարկե, Լոնդոնի կամրջի տակ, կամ Հայդ-պարկի որևէ մի խուլ անկյան սառը գետնի համեմատությամբ «Ռոուտան-հաուզը» գուցե դրախտ թվա, բայց լսեցեք, թե ինչպիսին է այդ դրախտը և ինչպիսի «հաճույք» են ստանում նրա բնակիչները:

«Ռոուտան-հաուզը» պետական մի վիթխարի շենք է: Այնտեղ մտնելու համար պետք է տոմս վերցնել, ինչպես բաղնիք կամ մետրո մտնելիս: Յուրաքանչյուր գիշերվա համար այցելուն վճարում է երկու շիլլինգ:

Շենքի ներքնահարկում կայարանային սպահլիճի նման խոշոր դահլիճներում, որը լցված է գորշ ծխով և ծխախոտի հոտով, դրված են փայտի երկար նստարաններ, որոնց վրա նստած, նիրհում են հին, պատառոտված հագուստներով մարդիկ: Վերև բարձրանալ կարելի է միայն երեկոյան ժամը 7-ից հետո:

Ամբողջ վերևի հարկի երկարությամբ երկար ու նեղ միջանցքն է, որա երկու կողմերում գտնվում են փոքրիկ վանդակներ, որոնք միմյանցից և միջանցքից բաժանված են փայտի միջնապատով, որն առաստաղի մոտ վերջանում է երկաթե ցանցով: Այդ վանդա-



կում հազիվ տեղավորվում է մի նեղ մահճակալ և մի աթոռ: Արտաքին պատի վրա, հենց առաստաղի մոտ, լուսամուտի փոխարեն մի բացվածք կա, որն աղոտ լույս է տարածում այդ խցիկում: Իսկ եթե դուք ունեք երեք շիլլինգ, ապա կարող եք վարձել «սենյակ-լյուկս»: Այս սենյակի ամբողջ «շքեղությունն» այն է, որ միջնապատի վերևի մասը ոչ թե երկաթե ցանցով է վերջանում, այլ՝ ապակեպատված է:

Այս գիշերային ապաստարանում ապրում են ավելի քան հազար անապաստան տղամարդիկ, որոնցից շատերը իրենց ողջ կյանքում չեն կարողացել այնքան դրամ հավաքել, որ ընտանիք կազմեն: Ես այնտեղ հանդիպեցի մի ծերունու, որը 7 տարի ծառայել էր անգլիական բանակում, իսկ այժմ մնացել էր փողոցում:

Բնակարանների պակասությունը Անգլիայի աշխատավորության համար ամենասուր պրոբլեմներից մեկն է:

1945 թվականի գարնանը ամբողջ երկրում կարելի էր տեսնել լեյբորիստների նախընտրական պլակատը, որն ընտրողներին խոստանում էր «մինչև հաջորդ ընդհանուր ընտրությունները Անգլիայում յուրաքանչյուր ընտանիք կստանա մի առանձին տուն»: Այդ

ժամանակից անցել է ավելի քան չորս տարի և լեյբորիստական լիդերները, հավանաբար, այժմ էլ նոր նախընտրական պլակատներ հորինելով են զբաղված։ Հավանաբար, նրանցից մեկի վրա նորից խոստում կլինի տալ «յուրաքանչյուր ընտանիքի մի տուն», բայց առայժմ... հազարավոր բանվորական ընտանիքներ ապրում են ծալքավոր ցինկից պատրաստված նախկին զինվորական բարակներում, վագոններում, գետնախորշերում, գիշերային ապաստարաններում կամ ուղղակի փողոցում։

Մի անգամ Կլեպխեմ ռայոնում (Լոնդոն) մենք հանդիպեցինք անգլիացի մի երիտասարդ կոմունիստուհու՝ Գլեդիս Դրեպերին։ Նա ասաց. «Շատ բանվորներ ինձ հրավիրում են այցելել իրենց տները։ Եվ որքան շատ ընտանիքներ եմ ես այցելում, այնքան ավելի է աճում իմ զայրույթը լեյբորիստական կառավարության քաղաքականության դեմ, որը մատը-մատին չի խփում ինչպես փոխելու համար այն սարսափելի պայմանները, որոնց մեջ ապրում են բանվորական ընտանիքները դեռևս այն ժամանակից, երբ իշխանության գլուխ էին կանգնած պահպանողականները։ Այս լեփ-լեցուն տներում ապրողներից ոչ մի մարդ չի կասկածում, որ դրությունը կարելի



կլինի փոխել, եթե լեյբորիստները ունենային այդպիսի ձգտում»։

Ինչպես լեյբորիստական կառավարությունը տասնյակ միլիոն ֆունտ ստեռլինգ ծախսեց, որպեսզի օգնի Հունաստանի միապետական-ֆաշիստական կառավարությանը՝ ժողովրդի դեմ մղած նրա պատերազմում։ Վիթխարի միջոցներ են ծախսվել սպառազինության համար։ Իսկ հազարավոր անգլիացի աշխատավորներ առաջվա նման ապրում են շատ ծանր պայմաններում։

Անգլիայի տնտեսական դրությունը սերտորեն կապված է լեյբորիստական կառավարության արտաքին քաղաքականության հետ։ Անգլիայի ղեկավար շրջանները երկիրը տանում են ամերիկյան իմպերիալիստների կողմից այն ստրկացնելու ուղիով, նրանք հույս են դնում դոլարներ շահելու նպատակով էքսպորտը մեծացնելու վրա։

Վերջերս Անգլիայի առևտրի մինիստր Վիլսոնը համայնքների պալատում հայտարարեց, որ կառավարական բոլոր գերատեսչություններին ցուցում է տված՝ առաջին հերթին նյութեր մատակարարելու այն ֆերմաներին, որոնք ապրանքներ են արտադրում ամերիկյան շուկայում սպառելու համար։

Ինքնին հասկանալի է, որ այդ «դոլարա-

յին» քաղաքականությունը մի նոր ծանր բեռ է հանդիսանում Անգլիայի աշխատավորների համար։

Անգլիայի հասարակ մարդիկ, որքան մենք հնարավորություն ունեցանք այդ բանում համոզվելու, ավելի և ավելի պարզ են ըմբռնում, որ լեյբորիստական կառավարությունը երկիրը մղում է դեպի պատերազմի ուղին, որի մեջ Մեծ Բրիտանիան սոսկ պիտի դառնա Ամերիկայի Միացյալ Նահանգների բազաներից մեկը։

Անգլիայի ժողովուրդը չի ցանկանում ոչ Ատլանտյան պակտը, ոչ որևէ այլ հակադեմոկրատական բլոկ, նա ցանկանում է խաղաղություն ու բարեկամություն Սովետական Միության հետ։ Մենք վկա եղանք այն մասսայական միտինգներին, որոնք կազմակերպվեցին ամբողջ երկրում Սովետական Միության դեմ ուղղված Ատլանտյան պակտը ստորագրելու դեմ։ Բոլոր միտինգներում ելույթ ունեցողները խնդրում էին մեզ հաղորդելու սովետական մարդկանց, որ անգլիական ժողովուրդը ցանկանում է հաշտ ու խաղաղ ապրել Սովետական Միության հետ։

Մեր տուն վերադառնալուց առաջ Լոնդոնում, Խոլբորն-խոլլեում տեղի ունեցավ միտինգ։ Այնտեղ հավաքվել էին հարյուրավոր



լոնդոնցիներ։ Միտինգին մասնակցել ցանկացողներն այնքան շատ էին, որ չէին տեղավորվում դահլիճում։ Շատերը կանգնած մնացին փողոցում, մուտքի առաջ։

Լոնդոնի մի տնային տնտեսուհի բոլոր հավաքվածների անունից ասաց. «Վերադառնում են այն բոլոր սարսափները, որ կրել ենք մենք, որը մենք հույս ունեինք այլևս երբեք չտեսնել։ Այժմ պատերազմը պատրաստվում է Սովետական Միության դեմ... Եվ այսօր մենք ասում ենք. երբեք մեր զավակներին չենք տա Սովետական Միության դեմ մղվող պատերազմին...»։

Բոլոր ելույթ ունեցողները պաշտպանում էին Սովետական Միության և Անգլիայի ժողովուրդների խաղաղության ու բարեկամության գաղափարները։

Վերադառնալով տուն, մենք մեզ հետ բերինք այն համոզմունքը, որ Անգլիայի աշխատավոր ժողովուրդը չի պաշտպանում Անգլիայի ռեակցիոն ղեկավար շրջանների հակադեմոկրատական քաղաքականությունը, որ նա լի է Սովետական Միության հետ խաղաղության ու բարեկամության պահպանելու ցանկությամբ։

Օ. ՁԵՁՈՏԿԻՆԱ

(«Блокнот агитатора» № 14, 1949 г.).

# ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ՋՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

Հումքը խնայողաբար օգտագործելու մասին Կուպավինայի Նուրբ մահուդի ֆաբրիկայի ստախանովականներ, մանածագործ Մարիա Ռոժնևայի և ջուլհակուհի Լիդիա Կոնոնենկոյի հայրենասիրական առաջարկությունը մեծ արձագանք է գտել նաև մեր ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունների աշխատողների մեջ։ Ամենուրեք բանվորներն ու բանվորուհիները պայքարում են հումքն ավելի խնայողաբար օգտագործելու, երկրին նորանոր տնտեսումներ տալու համար։

Հումքի խնայողության համար մղվող պայքարում մեծ դեր է խաղում ցուցադրական ագիտացիան—կոչերի և պլակատների, ցուցադրական տախտակների գեղարվեստական ձևավորումը, նրանց բովանդակալի լինելը։ Ագիտկոլեկտիվներին օգնելու համար ստորև զետեղում ենք մի քանի տեղեկություններ ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառների վերաբերյալ՝ կոչերի և պլա-



կատների ձևավորման, ինչպես նաև զրույցների ժամանակ օգտագործելու համար։

## ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆ

✪ 1948 թվի առաջին կիսամյակում ՍՍՌՄ արդյունաբերական ձեռնարկությունները տնտեսեցին ավելի քան 600 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։ Այդ քանակությամբ էլեկտրաէներգիայով կարելի է ձուլել 13 միլիոն տոննա թուջ, կամ թե հանել 40 միլիոն տոննա քարածուխ, կամ արտադրել 6 միլիոն տոննա գլանվածք։

Եթե Սովետական Միության տեքստիլ ֆաբրիկաներում պարապ պտտվող իլիկների թիվը կրճատվի մեկ տոկոսով, ապա դրանից կխնայվի այնքան էլեկտրաէներգիա, որով հնարավոր կլինի յուրաքանչյուր տարի լրացուցիչ կերպով արտադրել 724 հազար մետր չիթ։

Եթե Սովետական Միության բնակելի տներում հանգցվեն բոլոր այն էլեկտրական լամպերը, որոնց գործածության կարիքը չի զգացվում, դրանից խնայված էլեկտրաէներգիան կբավարարի մեկ տարվա ընթացքում 10 հազար բնակարան լուսավորելու համար։

Խնայված յուրաքանչյուր հազար կիլովատ-ժամ էլեկտրական էներգիան ապա-

հովում է լրացուցիչ կերպով արտադրելու, օրինակ՝ 2.000 մետր բամբակեղեն գործվածք, կամ 1500 զույգ կոշիկ։

✪ Նավթամթերքների կորուստների մեկ տոկոս խնայողությունը հնարավորություն կտա ապահովել 15 հազար ապրանքատար ավտոմեքենայի տարեկան աշխատանքը և երկաթուղով 10 հազար կիլոմետր փոխադրելու 10 հազար վագոն բեռ։

Նավթի կորուստները մեկ տոնայով կրճատելը հնարավորություն է տալիս վառելանյութով ապահովել 10 հեկտար ցանքատարածության մշակությունը, կամ թե երկաթուղով 1000 կիլոմետր փոխադրել մեկ վագոն բեռ։

✪ Եթե խառատի չորս դազգահ սկսեն աշխատել արագահատ մշակման մեթոդով, ապա նրանք կկատարեն 5 խառատի դազգահի աշխատանք. այսպիսով հնարավորություն կստեղծվի ազատել մեկ դազգահ և մեկ որակյալ խառատ՝ ուրիշ աշխատանք կատարելու համար։

✪ Շինարարության արժեքի յուրաքանչյուր տոկոս իջեցումը տարեկան տալիս է 300 միլիոն ռուբլու խնայողություն, որով հնարավոր է կառուցել բնակարաններ 100 հազար մարդու համար։



Կառուցողների տված յուրաքանչյուր րոպե պարապուրդը մեր երկրին նստում է 87 միլիոն ռուբլի. այդ գումարով կարելի է կառուցել 17 հացի գործարան, յուրաքանչյուրն օրական 50 տոննա արտադրական կարողությամբ։

Եթե յուրաքանչյուր կառուցող իր տարեկան աշխատանքի արտադրողականությունը բարձրացնի միայն մեկ տոկոսով, այդ մեր երկրին հնարավորություն կտա լրացուցիչ կերպով կառուցել մեկ տրակտորային գործարան՝ տարեկան 20 հազար տրակտորի արտադրողականությամբ, կամ կոմբայնի 5 գործարան, յուրաքանչյուրը տարեկան 8 հազար ինքնագնաց կոմբայնի արտադրության կարողությամբ։

✪ Բամբակի հումքի մեկ տոկոս խնայողությունը մեր երկրին լրացուցիչ կերպով կտա 32 միլիոն մետր բամբակեղեն գործվածք, բրդեղեն հումքի մեկ տոկոս խնայողությունը՝ մեկ միլիոն 100 հազար մետր բրդեղեն գործվածք։

Տեքստիլ արդյունաբերության սարքավորման արտադրողականության մեկ տոկոս բարձրացումը մեր երկրին կտա 30 միլիոն մետր բամբակեղեն գործվածք, 1,5 միլիոն մետր վուշի գործվածքեղեն, մեկ միլիոն մետր

բրդյա գործվածքեղեն, 700 հազար մետր մետաքսյա գործվածքեղեն։

✪ Ձևելու ժամանակ կաշվի յուրաքանչյուր տակոս խնայողությունը աշխատավորությանը լրացուցիչ կերպով կտա մեկ միլիոն զույգ կոշիկ։

Առաջին տեսակի կոշիկի արտադրանքը 0,5 տոկոսով ավելացնելը կտա այնքան լրացուցիչ կուտակում, որը համասար կլինի կոշիկի երկու գործարանի արժեքի, յուրաքանչյուրը 2,5 միլիոն զույգ կոշիկի արտադրության կարողությամբ։

Մանվածքի ծախսումը միայն մեկ տոկոսով կրճատելը ազգաբնակչությանը լրացուցիչ կերպով կտա 6 միլիոն զույգ գուլպա։

Ձևելու ժամանակ տեքստիլ գործվածքեղենի միայն մեկ տոկոսի խնայողությունից լրացուցիչ կերպով կարելի է կարել 120 հազար վերարկու, 163 հազար կոստյում, 140 հազար կանացի շրջազգեստ, 400 հազար հատ սպիտակեղեն։

Ապակու ջարդումը միայն մեկ տոկոսով կրճատելը երկրին լրացուցիչ կերպով կտա 1,4 միլիոն շիշ, 800 հազար հատ թեյի բաժակ, 160 հազար լամպի ապակի։

✪ Ոչնչացված յուրաքանչյուր ցենտներ



ճակնդեղը համասար է մեկ փութ շաքարի կորուստի։

Երկաթուղային փոխադրումների ժամանակ և պահեստներում պահպանելիս շաքարի ճակնդեղի կորուստների միայն մեկ տոկոսի կրճատումը լրացուցիչ կերպով կտա 250 հազար ցենտներ շաքար։

Հացի արտադրության մեջ արտադրական ծախսերի միայն մեկ տոկոս կրճատումը երկրին լրացուցիչ կերպով կտա 100 հազար տոննա հաց։

✪ Եթե շոգեքարշի տաքացման համար ծախսվող վառելանյութը կրճատվի մեկ կիլոգրամ պայմանական վառելանյութով, ապա այդ երկրին տարեկան կտա 177 հազար տոննա վառելանյութի խնայողություն, կամ թե շահագործման ծախսերի գծով կստացվի 9 միլիոն 500 հազար ռուբլու խնայողություն։

Այդ քանակությամբ խնայված վառելանյութով կարելի է լրացուցիչ կերպով փոխադրել 2 միլիոն 600 հազար տոննա բեռ։

Գնացքի քաշի մեկ տոկոս ավելացումը շահագործվող շոգեքարշերի պարկը կկրճատի 68 միավորով և տարեկան կտա 31 միլիոն 600 հազար ռուբլու պետական միջոցների խնայողություն։

—◆—

# ԻՆՉ ԿԱՐԴԱԼ

**Դ. ԺՈՒՐԱՎԼՅՈՎ.—«Ագիտատորը սոցիալիստական մրցության կազմակերպիչն է», Հայպետհրատ, 1948 թ., 72 էջ։**

«Ագիտատորի գրադարանի» սերիայով լույս տեսած վերոհիշյալ բրոշյուրում մեր լավագույն ագիտատորների աշխատանքի հարուստ փորձով ու օրինակով ցույց են տրված սոցիալիստական մրցության ծավալման ու կազմակերպման գործում ագիտատորների անելիքները։

Սոցիալիստական մրցությունը, ինչպես այն բնորոշել է ընկեր Ստալինը, «...միլիոնավոր աշխատավոր մասսաների առավելագույն ակտիվության վրա հիմնված՝ սոցիալիզմի շինարարության կոմունիստական մեթոդն է»։ Սոցիալիստական մրցության պրոցեսում բացահայտվում են սովետական մարդու նոր բարոյական հատկությունները, ամրապնդվում ու զարգանում է կոմունիստական վերաբերմունքը դեպի աշխատանքը։ Մրցության մեջ գլխավորը՝ աշխատանքի բարձր արտադրողականության համար մղվող



պայքարն է, որովհետև «...դա, վերջին հաշվով, ամենակարևորը, ամենագլխավորն է նոր հասարակարգի հաղթանակի համար» (Վ. Ի. Լենին)։

Ստախանովյան շարժման, որը հանդիսանում է սոցիալիստական մրցության նոր, բարձրագույն փուլը, նշանակությունը հենց այն է, որ նա ստեղծում է աշխատանքի ավելի բարձր արտադրողականություն, քան կապիտալիստական երկրներում։ Սոցիալիստական մրցության համաժողովրդական բնույթը նոր ուժով ու թափով է դրսևորվում այժմ՝ հետպատերազմյան ստալինյան հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար մղվող պայքարում։

Ագիտատորը արտադրության մեջ և կոլխոզում՝ պարտիական կազմակերպության ակտիվ օգնականն է, նա հանդիսանում է սոցիալիստական մրցության կազմակերպիչը։ Հարուստ ու բազմազան են սոցիալիստական մրցության կազմակերպման ձևերը։ Կազմակերպելով մրցությունը, ագիտատորը պետք է հենվի արտադրության առաջավորների փորձի վրա, նրանց փորձով օգնի աշխատավորներին հասնելու մինչև առաջավորների մակարդակը։ Մրցության ծավալման համար նա պետք է լայնորեն օգտագործի քաղա-

քական ագիտացիայի բոլոր միջոցները՝ բանավոր և ցուցադրական ագիտացիան, մամուլը, ռադիոն և այլն։ Ագիտատորն իր աշխատանքի հիմքում պետք է դնի առաջավորների փորձի պրոպագանդան, կազմակերպի առաջավոր վարպետների, ստախանովականների ելույթները։

Սոցիալիստական մրցության հրապարակայնությունը և մասսայականությունը նրա հաջողության հիմքն է։ Ագիտատորը պետք է գիտենա մրցության յուրաքանչյուր մասնակցի պարտավորությունների կատարման ամենօրյա արդյունքները, մասսայականացնի այդ արդյունքները անհատական և խմբային զրույցների, պլակատների, պատի թերթերի, գրաֆիկների, մրցության հաշվառման տախտակների միջոցով։

Բրոշյուրում ագիտացիոն-մասսայական աշխատանքից վերցրած բազմաթիվ կոնկրետ օրինակների հիման վրա ցույց է տրված, թե ինչպես արտադրության մեջ և կոլխոզում ագիտատորները պետք է կազմակերպեն աշխատավորների սոցիալիստական մրցությունը բարձր արտադրողականության, բերքատվության բարձրացման համար մղվող համաժողովրդական պայքարում։






Պատասխանատու խմբագիր՝
Հ. ԱՅՎԱԶՅԱՆ

ԳԻՆԸ 50 ԿՈՊ.

*ՎՖ 02159 Պատվեր № 462 Տիրաժ 3.350*
*Հայպոլիգրաֆհրատի վարչության № 2 տպարան, Երևան*

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 11 1949 г.

# ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է
# „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ"-Ի
# 1949 ԹՎԻ 2-ՐԴ ԿԻՍԱՄՅԱԿԻ
# ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*Բաժանորդագրությունը ընդունվում է Սոյուզպեչատի և Փոստի բոլոր բաժանմունքներում, ինչպես նաև հիմնարկ-ձեռնարկներում, ֆաբրիկա-գործարաններում, ուսումնարում, սովխոզներում և կոլկան հիմնարկներում, մամուլի հասարակական լիազորների մոտ։*

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ՝

**6 ամիսը 12 համարը — 6 ռուբլի**
**3 ամիսը 6 „ — 3 „**
**Մեկ համարը — 50 կոպեկ**

**ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ**